վերիրատարակութեան մասին :

— Բոլոր գործերուս վերհրատարակութեան հոգը, որոշ պայմանագրութեամբ, վստահած եմ Համազգայինի : Ուրախ եմ ատոր համար, որովհետեւ գիտեմ թէ Համազգայինը բծախնդրութեամբ գլուխ պիտի հանէ այս գործը, որ հիմնական կարեւորութիւն կը ներկայացնէ ինծի համար :

«Համազգային»ը պիտի հրատարակէ ոչ միայն «Զարթօնք»ը, «Լուսաղէմ»ին եւ «Ապրումներ»ը, այլ նաեւ անտիպ գործերս, ինչպէս «Անցած օրերէն»ը, ու եթէ դեռ ապրիմ՝ նոր գրելիք գործս, որովհետեւ մտքիս մէջ գլխաւոր նիւթ մը ունիմ, որ եթէ առանց լրացնելու մեռնիմ, այդ պարագային աչքս եւ անոր մնացած պիտի ըլլայ :

---

բարութիւնը կը ծանուցանէ թէ ստիպողական միջոցներու ծրագիրը գործադրուած է եւ առաջին զօրամասերու առաքումը վերջացած :

Օդային զինուորներ եւ հետեւակազօրքը խստօրէն կը հետապնդեն ապստամբներու զօրաւոր խումբ մը հարաւային Ալժերիոյ մէջ : Առջի օր ահաբեկիչներ հրկիզեցին Պուժիի Ֆրանսական ընկերութեան գործարանը որ ամբողջովին մոխիր դարձաւ : Նիւթական վնասը՝ աւելի քան 500 միլիոն ֆրանք : Ուրիշ չորս ըմբոստներ ալ հրկիզեցին ալֆայի մթերք մը Ալժէի մէջ : Յարձակումները կը շարունակուին ամէն քաղաքի մէջ : Առջի օր 3000 նորակոչ զինուորներ եւս ցամաք ելան Ալժէ :

Տասը ապստամբներ մահուան դատապարտուեցան Օրանի մէջ :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԿԷՍ ՄԻԼԻՈՆ բանուորներ պիտի դադրին Սիպերիա, երկու տարուան ընթացքին, մշակելու համար խամ եւ խոպան հողերը, ինչպէս կը ծանուցանէ Մոսկուայի անթենը : Այս շարժումը սկսած էր 1954ին եւ նորէն կ'արծարծուի նոյն ուժգնութեամբ :

ՄԷԿ ՄԻԼԻՈՆ բանուորներ գործադուլ մեկնեցան, Հոգեգալուստի տօնին առթիւ : Հողագործները փակած են գլխաւոր ճամբաները եւ ծանր արկածներ պատահեցան :

ՀԱՑԱԳՈՐԾ բանուորները գործադուլ մը սարքած են երեք օրուան համար, սկսելով չորեքշաբթի օրէն : Միջոցներ ձեռք առնուած են Փարիզի ամենօրեայ հացը ապահովելու համար :

ՍԹԱԼԻՆԻ դէմ պայքարը հետզհետէ կը ծաւալի : Առաջին անգամ ըլլալով, Մոսկուայի երիտասարդական օրկանը, «Կոմսոմոլսկայա Փրաւտա» հրատարակեց Լենինի քաղաքական կտակը որ երբեւան կը հանէր Սթալինի կոպիտ եւ իշխանատենչ նկարագիրը եւ կը թելադրէր պատասխանատու պաշտօններ չյանձնել անոր : Այսպէս, արտասահմանի մէջ հրատարակուած գաղտնիքը Խ · Միութեան քաղաքացիներուն կը յայտնուի 34 տարի ետքը...

Խ · ՄԻՈՒԹԻՒՆԸ կը ծանուցանէ թէ զօրագունդ մը եւս քաշած է արեւելեան Գերմանիայէն, համաձայն 1·200·000 զինուորներ արձակելու որոշման :

ՍԱԿԱՐԱՆ (18 Մայիս) — Ձոյլ ոսկի 448·000, նափոլէոն 3090, զուից · 2970, անգլիական 3980, քսան տոլարնոց 15600, թղթադրամ (անպաշտօն) անգլիական 1035, տոլար 385, զուից · 91·25, պելժիական 7·80, լիր 0·61 :

---

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Պ · Գր · Ճիզմէճեան պիտի տայ շատ հետաքրքրական ուսումնասիրութիւն մը, «Կրակն ու ջուրը», այս չորեքշաբթի ժամը 9ին Քաֆէ Քառէի սրահը :

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

---

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պարոն Կարապետ Իսրայէլեան կը ծանուցանէ թէ Մայիս 20ին, Հոգեգալստեան օրը հոգեհանգիստ պիտի կատարուի Փարիզի Ժան Կուժօնի Հայոց եկեղեցիին մէջ, ի յիշատակ ՍԱՐԳԻՍ ԻՍՐԱՅԷԼԵԱՆԻ (ճարտարապետ), անոր մահուան քառասունքին առթիւ : Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները :

---

## ՄԱՅԻՍ 28Ը

### Փ Ա Ր Ի Զ Ի Մ Է Ջ

26 Մայիս, շաբաթ գիշեր ժամը 9էն մինչեւ լոյս, 6րդ թաղապետարանի շքեղ սրահներուն մէջ :

Փլաս Սէն Սիւլփիս, մէթրօ Սէն Սիւլփիս

Կը նախագահէ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

Կը խօսին Շ · ՆԱՐԴՈՒՆԻ եւ Ն · ՆԻԿՈՂՈՍԵԱՆ :

Գեղարուեստական խնամեալ բաժին :

Կը մասնակցին՝ Օր · Սիրանոյշ Տէր Կոմսեան, երգ, (Լիոնի երաժշտանոցէն) եւ Պ · Անտիս Քիւփէլեան :

Հայկական եւ կովկասեան պարեր Հ · Յ · Դ · Պաննէօ Քաշանի Նոր Սերունդի պարախումբին կողմէ :

Կէս գիշերէն վերջ եւրոպական պարեր : Մինչեւ առաւօտ :

Orchestre GEORGES CLEMENT

Խօսնակ Գ · Ամիրայեան :

Ձուկ եւ մատչելի պիւֆէ :

Մուտք 250 ֆրանք

Տոմսերը կը ծախուին «Յառաջ»ի մօտ, Հրանտ Սամուէլ եւ Պարսամեան գրատուները, Պէլվիլի մէջ ճաշարան Արթիւր : Իսկ հանդէսին օրը կիշէն :

---

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԻՍԻ. — Հ · Յ · Դ · Նոր Սերունդի «Խանասոր» խումբի ժողովը այս երեքշաբթի ժամը 20·30ին Խրիմեան սրահը : Կը հրաւիրուին բոլոր ընկերները եւ կը կատարուին նոր անդամագրութիւնները : Ներկայ կ'ըլլայ Կեդր · վարչութեան ներկայացուցիչը :

Ֆ · Կ · ԽԱՉԻ Լիոնի վարչութիւնը ընդհանուր ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամուհիները, այս չորեքշաբթի, կէսօրէ վերջ ժամը 15ին, Յոյներու սրահը, 5 րիւ Փօնըֆուա : 1 · Զեկուցում պատգամաւորի : 2 · Նոր վարչութեան ընտրութիւն : Օդափոխութեան կայանի համար դիմումները կատարել օր առաջ :

---

SALLE DE L'ECOLE NORMALE DE MUSIQUE

78, Rue Cardinet, Paris,

Métro : Malesherbes

Շաբաթ, 26 Մայիս 1956, ժամը 21ին

ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ ԴԱՇՆԱԿ-ՋՈՒԹԱԿ

ԱՐՄԱՆ ՄԱՆՈՒԿԵԱՆ (դաշնակահար), ՌԸՆԷ ՄԱՍՔՕՐ (ջութակահար) :

Յայտագիր. — ՋԱՆԻԻ (լա մաժէօռ), ՄՈՑԱՐԹԻ (սօլ մաժէօռ), ՊՐԱՄՍԻ (րէ մինէօռ) եւ ԼԸՔԷՕԻ (սօլ մաժէօռ) դաշնակի եւ ջութակի սոնաթները :

Տոմսերու գին՝ 200էն 500 ֆրանք : Ուսանողներու համար զեղչ : Դիմել՝ Սրահը, կամ Կիւրեղ Մանուկեանի,

15, Rue du Sentier. Tél. : LOU. 41-29

---



Imp. «Araxes», 46, Rue Richer - Paris (9e)



ՍՏԻՊՈՂԱԲԱՐ ԿՈՒԶՈՒԻՆ

Իրենց տան մէջ սիւրժիւրէօզ մեքենայ ունեցող գործաւորուհիներ, ֆոռսաժի գործի համար : Դիմել՝

**Paris-Californie (Mutévélian)**

**16, Rue Sainte-Cecile, Paris (2).**

---

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Որբախնամ Օգն · Մարմնի (Փարիզահայ Տիկ · Միութիւն) տարեկան պարահանդէսը Նոյմ · 18ին, Կռանտ Օթէլի մէջ :

---

ԿԸ ՓՆՏՌԵՄ հօրեղբօրորդիս Անդին Պէքմէզեան, 1922ին մեկնած է Ֆրանսա, Նիս, Մարսէյլ, Փարիզ : Իմացնել Դանիէլ Պէքմէզեանի՝

*Ras-el-Kraya* 18/41, Bagdad (Irak).

---

27 ՄԱՅԻՍ ԺԱՄԸ 15ԷՆ 22

## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած «Մ · Ռափայէլեան Նախ · Աշակերտներու Միութեան» կողմէ

ՍԱՄՈՒԷԼ - ՄՈՒՐԱՏԵԱՆ վարժարանի պարտէզներուն մէջ

26, Rue Troyon, Métro : Pont de Sèvres

Եւրոպական պարեր. —

**Orchestre MANUEL PIZZARRO**

Մասնակցութեամբ՝ «Նայիրի» երգչախումբ, ղեկավարութեամբ՝ ԳԷՈՐԳ ԵԱՆՊԷԿԵԱՆԻ, ԲԻՒԶԱՆԴ ՖՆՏԻԿԵԱՆԻ (կիթառ), ԱՐՇԱԻՐ ՏԷՏԷՃԵԱՆԻ (ձեռնադաշնակ) եւ ուրիշ անակնկալներ :

Եթէ օդը աննպաստ ըլլայ, հանդէսը տեղի կ'ունենայ դոց սրահին մէջ :

---

րով. բայց կրցանք ճշդել շատ մը բա- ներ: Ամբողջ Խ. Միութեան մէջ ամէն տեղ ջերմ ընդունելութիւն գտանք ոչ միայն տեղական իշխանութիւններէն, այլեւ ժողովուրդէն որ ծափահարեց Ֆրանսան եւ մասնաւորապէս փառաբանեց դիմադրական պայքարը»:

Նախարարը յետոյ գնահատեց Խ. Միութեան մեծ ճիգը՝ բարուոքելու համար իր ժողովուրդներուն ապրուստի մակարդակը: Տեղեկութիւններ հաղորդեց, նաեւ, Փրակայի մէջ կատարուած խօսակցութեանց մասին:

Տեղական թերթ մը այս առթիւ յիշելով Պ. Փինոյի հանդիպումը Երեւան, կ'ըսէ թէ այդ այցելութեան շնորհիւ «Ֆրանսական հպատակ Հայերը կրցան պարզել իրենց բանտարկեալի տխուր վիճակը: Պ. Փինօ պաշտպանեց այս 8000 դժբախտներուն դատը: Յուսանք թէ պիտի կրնայ քանի մը հոգի ազատել»:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

Խ. ՄԻՈՒԹԻՒՆԸ Մոսկուա հրաւիրեց Անգլիոյ օդանաւային նախարարը եւ խումբ մը բարձրաստիճան սպաներ, ներկայ ըլլալու համար Օդանաւի Օրուան հանդիսութեանց:

ՄՈՍԿՈՒԱՅԷՆ կը հեռագրեն թէ բոլշեւիկեան յեղափոխութենէն ի վեր առաջին Աստուածաշունչը հրատարակուեցաւ, համայն Ռուսիոյ պատրիարքին օրհնութեամբ: Վերջերս հրատարակուած էր նաեւ պատարագամատոյց մը:

ՌՈՒՄԱՆԻՈՅ եւ Հունգարիոյ ռուս զինուորները եա պիտի կանչուին, եթէ հաւատանք Մոսկուայի մէջ շրջած զրոյցի մը: Երբ հարցում ուղղեցին Պ. Մոլոթովի, ոչ հաստատեց, ոչ ալ հերքեց: Ցետոյ օգնութեան կանչեց Ա. Միկոյեանը, որ նոյնպէս խուսափողական պատասխան տուաւ:

ԹՈՒՐՔԵՐՈՒ ԵՒ ՅՈՅՆԵՐՈՒ միջեւ կռիւը կը շարունակուի Կիպրոսի մէջ: Առջի օր երկու ոստիկները կռուեցան դանակներով եւ բիրերով, Լառնաքայի փողոցներուն մէջ որոնք ռազմադաշտի մը վերածուած էին: Տասներեք հոգի հիւանդանոց փոխադրուեցան, վեցը յոյն, եօթը թուրք: Ամէնէն ծանր վիրաւորները Յոյներ էին: Նոյն օրը (ուրբաթ) յոյն աղջիկներ կռուեցան անգլ. զինուորներու դէմ, Նիկոսիոյ փողոցներուն մէջ, իսկ ահաբեկիչներ վիրաւորեցին երկու անգլ. զինուորներ Ֆամակուսթայի մէջ:

ՅՈՐԴԱՆԱՆԻ բանակին սպարապետ նըշանակուեցաւ զօր. Նուվար, որ Եգիպտոսի վարչապետին մտերիմ բարեկամն է, 38 տարեկան: Անգլիա տրամադիր է վերաքննելու իր դաշինքը Յորդանանի հետ, ռազմական խարիսխները պահելու պայմանով:

ՆԱԽԱԳԱՀ ԱՅԶԸՆՀԱՈՒԸՐ ուժգին կոչ մը ուղղեց եւրոպական միութեան համար, իբրեւ ապահով խաղաղութեան եւ բարգաւաճման:

ԱՐԺԱՆԹԻՆԻ փոխադրութեանց պաշտօնեաները ընդհ. գործադուլ սարքած են: Կառավարութիւնը 350 հոգի ձերբակալեց Պուէնոս Այրէսի մէջ, շարժումը կասեցնելու համար:

ՍՈՒՐԻԱ եւս պատուիրակութիւն մը պիտի ղրկէ Մոսկուա, օդանաւային հանդիսութեանց առթիւ:

ԼԻԲԱՆԱՆԻ կառավարութիւնը որոշեց ջնջել Պէյրութի նաւահանգստին շահագործման մենաշնորհը, որ Ֆրանսական ընկերութեան մը տրուած էր 1886ին եւ կը լրանայ 1990ին:

ՍԱԿԱՐԱՆ (Մայիս 25) — Զոյլ ոսկի 446.000, նափոլէոն 3090, զուից. 2970, անգլիական 3960, քսան տոլարնոց 15.560, Թղթադրամ (անպաշտօն) անգլ. 1050, տոլար 384, զուից. 92, պելժ. 7.9, լիր 0.61:

### ՊՏՈՅՏ ՕԹՈՔԱՐՈՎ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Առնուվիլի «Կառվարենց» մասնաճիւղի կողմէ, կիրակի 3 Յունիս.

FONTAINEBLEAU

Մեկնում Առնուվիլէն ժամը 7,30ին: Փարիզէն մեկնողներուն ժամադրութիւն ժամը 8,30ին Մէթրօ Փլաս տ'Իթալի:

Տեղերը ապահովել հեռախօսելով Նիկողոսեանի 446 Կօնէս եւ Ալթունեանի, 571 Կօն..

Երթուդարձ 600 ֆրանք:

## ՄԱՅԻՍ 28Ը

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Յունիս 9, շաբաթ երեկոյ «Ալհամպրայի» սրահին մէջ: Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէի, մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի բոլոր խումբերու եւ Կ. Խաչի մասնաճիւղերու, ինչպէս նաեւ բարեկամ միութեանց:

Կը նախագահէ Ց. ՊԱՊԻԿԵԱՆ

Կը խօսին՝ ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼ եւ ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱԻՈՐԵԱՆ:

Գեղարուեստական ճոխ բաժին:

Կէս գիշերէն վերջ եւրոպական եւ հայկական պարեր:

Նուագախումբ ԼԻՒՔ ԷՐԱՐ:

Մուտքը ազատ է:

ԻՍԻ

Կը նախագահէ ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

ԱԼՖՈՐՎԻԼ.— 2 Յունիս, շաբաթ գիշեր

ՇԱԻԻԼ.— 10 Յունիս, կիրակի կէսօրէ վերջ:

Կը նախագահէ Պ. ԶՊՈՒԳՃԵԱՆ

### «ՅԱՌԱՋ» ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Ս. Սաթիւրնէնէն (Ավինեօն) Տէր եւ Տիկին Զաքէոս Գվիրեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրեն Տիկին Սիրանոյշ Գալուստեանի (Մարսէյլ), Մայրերու Օրուան առթիւ: Պոնտիէն Պ. Պալեան 500 ֆրանք:

× Նոյնպէս Ս. Սաթիւրնէնէն Տէր եւ Տիկին Վարդերես Մինասեան կը նուիրեն հազար ֆրանք, Ֆ. Կ. Խաչին, հազար ֆրանք Կարմիր Խաչին, հազար ֆրանք ծերանոցներուն, 500 ֆր. Աղքատախնամին եւ 500 ֆրանք ալ «Յառաջ»ի բարգաւաճման համար:

ԱՌՆՈՒՎԻԼԻ Եկեղեց. շինութեան յանձնախումբը շնորհակալութեամբ ըստացած է, Տիկին Գարտինէ Աղապապեանի միջոցով հաւաքուած գումարը.—

| | |
|---|---|
| Ամերիկայէն Պ. Պօղոս Ներսէսեանէ (տասը տոլար) որ արժած է | 3.800 |
| Տէր եւ Տիկ. Խրիմեանէ | 1.200 |
| Տիկ. Ս. Մովսէսեանէ | 1.000 |
| Տօքթ. Ա. Ճինճեանէ | 1.000 |
| Տիկ. Ա. Ղարիպեանէ | 1.000 |
| Պ. Օննիկ Մադոսմեանէ | 1.000 |
| Տիկ. Գարտինէ Աղապապեանէ | 500 |
| Տիկին. Ա. Զրուանտեան | 500 |
| Ոմն | 300 |
| Ոմն | 200 |
| Գումար | 10.500 |
| Նախորդ գումար | 264.000 |
| Ընդհ. գումար | 274.500 |

Imp. «Araxes», 46, Rue Richer - Paris (9e)

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս չորեքշաբթի իրիկուն ժամը 20.30ին: Կը խօսի՝ վերապատուելի ՍԻՄԼԵԱՆ: Նիւթը՝ Տոքթ. Ալպէրշվայցեր, մարդասէրը:





### ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական հաւաքոյթը՝ այս երեքշաբթի, ժամը 21ին, Քաւէ սրճարանին վերնայարկը:

Դասախօս՝ ՏԻԿ. ԷԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ:

Նիւթը՝ Վահան Տէրեանի կեանքը եւ բանաստեղծութիւնը:

Մուտքը ազատ է:

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Սէն Լուի Ակնունի ենթակոմիտէն իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ ընկերներ Օսկիան եւ Մարգար Տերունեանի եւ իրենց ընտանեկան պարագաներուն, իրենց մօր դառնաղէտ մահուան առթիւ: Փոխան ծաղկեպսակի եղած են հետեւեալ նուէրները.— Պ. Պետրոսեան եղբարք հազար ֆրանք, Կիրակոս Վարդանեան 1500 ֆր. Թաղի դպրոցին: Պ. Ղազարոս Կիլեան հազար ֆր., Սեբաստիոյ Մուրատ Ռափայէլեան ուսումնասիրացին Տերունեան եղբարք երկու հազար ֆրանք Փարիզի Մշակութային Տան: 500 ֆրանք «Յառաջ»ի բարգաւաճման համար: Սաանալ Գ. Միլոյեանէ:

●

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Կոմիտէն իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ ընկեր եւ ընկերուհի Ալիքեանի իրենց կարքի արկածին առթիւ եւ շուտափոյթ ապաքինում կը մաղթէ Տիկին Մարի Ալիքեանի:



### Կ'ՈՒԶՈՒԻՆ

Բանփէքսիոնի համար լաւ կարող մը: Դիմել՝

Paris Californie
16, Rue Ste. Cécile - Paris (9e).



